Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 15 (34)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15 (34)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Հաղորդագրություն Երեք տերություն-
ների Բեռլինի Կոնֆերանսի մասին

# ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԵՔ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԵՌԼԻՆԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՄԱՍԻՆ

## I.

1945 թ. հուլիսի 17-ին Ամերիկա-
յի Միացյալ Նահանգների Պրեզի-
դենտ Հարրի Ս. Տրումենը, Սովետա-
կան Սոցիալիստական Ռեսպուբլի-
կաների Միության Ժողովրդական
Կոմիսարների Սովետի Նախագահ
Գեներալիսիմուս Ի. Վ. Ստալինը և
Մեծ Բրիտանիայի Պրեմյեր-Մինիստր
Ուինստոն Ս. Չերչիլլը՝ պ-րն Կլի-
մենտ Ռ. Էտտլիի հետ՝ հանդիպեցին
Բեռլինի եռեքկողմյան կոնֆերան-
սում։ Նրանց ուղեկցում էին երեք
Կառավարությունների Արտաքին
Գործերի Մինիստրներ Վ. Մ. Մոլո-
տովը, պ-րն Ջ. Ֆ. Բիրնսը և պ-րն Ա.
Իդենը, շտաբների պետերը և այլ
խորհրդականներ։

Հուլիսի 17—25-ը ժամանակամիջոցում տեղի ունեցավ 9 նիստ։ Դրանից հետո Կոնֆերանսը ընդհատվեց երկու օրով, երբ հայտարարվում էին Անգլիայի ընդհանուր ընտրությունների արդյունքները։

Հուլիսի 28-ին պ-րն Էտտլին Կոնֆերանս վերադարձավ որպես Պրեմյեր-Մինիստր՝ ուղեկցությամբ Արտաքին Գործերի նոր Մինիստր պ-րն Է. Բեվինի։ Տեղի ունեցավ ևս 4 նիստ։ Կոնֆերանսի ժամանակ տեղի էին ունենում երեք Կառավարությունների Ղեկավարների կանոնավոր հանդիպումներ, որոնց ուղեկցում էին Արտաքին Գործերի Մինիստրները, և Արտաքին Գործերի Մինիստրների պարբերական խորհրդակցություններ։

Հարցերի նախնական պատրաստման համար Արտաքին Գործերի Մինիստրների խորհրդակցության նշանակած հանձնաժողովները նույնպես ամեն օր նիստ էին գումարում։ Կոնֆերանսի նիստերը տեղի էին ունենում Պոտսդամի մոտ Սեսիլիան—Հոֆում։



Կոնֆերանսն ավարտվեց 1945 թ. օգոստոսի 2-ին։

Ընդունվեցին կարևոր որոշումներ և համաձայնություններ։ Տեղի ունեցավ կարծիքների փոխանակություն մի շարք այլ հարցերի շուրջը։ Այդ պրոբլեմների քննարկումը շարունակվելու է այդ Կոնֆերանսի ստեղծած Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդում։

Պրեզիդենտ Տրումենը, Գեներալիսիմուս Ստալինը և Պրեմյեր-Մինիստր Էտտլին թողնում են այդ Կոնֆերանսը, որն ամրապնդեց երեք Կառավարությունների կապերը և ընդլայնեց համագործակցության ու ըմբռնման շրջանակները, լիակատար հավատով, որ իրենց Կառավարությունները և ժողովուրդները, այլ Միավորված Ազգերի հետ միասին կապահովեն արդարացի և կայուն խաղաղության ստեղծումը։

## II.

## ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՆԵ- ՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՀԻՄՆՈՒՄԸ

Ա. Կոնֆերանսը համաձայնության եկավ հինգ Գլխավոր Տերությունները ներկայացնող Արտաքին Գործերի Մինիստրների Խորհուրդ հիմնելու մասին՝ խաղաղ կարգավորման անհրաժեշտ նախապատրաստական աշխատանքը շարունակելու և քննարկելու համար այլ հարցեր, որոնք Խորհրդին մասնակցող Կառավարությունների համաձայնությամբ ժամանակ առ ժամանակ կարող են վերահանձնվել Խորհրդին:

Արտաքին Գործերի Մինիստրների Խորհուրդ հիմնելու համաձայնության տեքստում ասված է.

1. Պետք է հիմնվի Խորհուրդ՝ Միացյալ Թագավորության, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Չինաստանի, Ֆրանսիայի և Ամերիկայի Միացյալ Նահանգների Արտաքին Գործերի Մինիստրների կազմով:

2. ա) Խորհուրդը նորմալ կերպով նիստեր է գումարելու Լոնդոնում, որը



հանդիսանալու է Խորհրդի կողմից ստեղծվող Միացյալ Քարտուղարության մշտական նստավայրը: Յուրաքանչյուր Արտաքին Գործերի Մինիստրի ուղեկցելու է իր Արտաքին Գործերի Մինիստրի բացակայության ժամանակ աշխատանքը վարելու համար պատշաճ ձևով լիազորված բարձրաստիճան Տեղակալ, և տեխնիկական աշխատակիցների ոչ մեծ հաստիք:

բ) Խորհրդի առաջին նիստը տեղի կունենա Լոնդոնում ոչ ուշ, քան 1945 թ. սեպտեմբերի 1-ը: Նիստերը ընդհանուր համաձայնությամբ կարող են գումարվել մյուս մայրաքաղաքներում, որի մասին կարելի կլինի ժամանակ առ ժամանակ պայմանավորվել:

3. ա) Որպես Խորհրդի անմիջական և կարևոր խնդիր նրա վրա դրվում է՝ հաշտության պայմանագրեր կազմել Իտալիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի և Ֆինլանդիայի համար, դրանք Միավորված Ազգերին ներկայացնելու նպատա-

կով և Եվրոպայում պատերազմի ավարտման կապակցությամբ ծագող տերիտորիալ չլուծված հարցերը կարգավորելու առաջարկների մշակումը։ Խորհուրդը օգտագործվելու է Գերմանիայի համար խաղաղ կարգավորում նախապատրաստելու նպատակով, որպեսզի համապատասխան փաստաթուղթը այդ նպատակի համար պատշաճ ընդունվի Գերմանիայի կառավարության կողմից, երբ . այդպիսի կառավարություն կազմվի.

բ) Այդ խնդիրներից յուրաքանչյուրի լուծման համար Խորհուրդը կազմվելու է այն պետություններն ներկայացնող անդամներից, որոնք ստորագրել են Կապիտուլյացիայի պայմանները՝ թելադրված այն թշնամական պետությանը, որին վերաբերում է տվյալ խնդիրը։ Իտալիայի հետ խաղաղ կարգավորման հարցերը քննելու ժամանակ Ֆրանսիան համարվելու է որպես Իտալիայի կապիտուլյացիայի պայմանները ստորագրած։ Մյուս անդամները կհրավիրվեն մասնակցելու Խորհրդին այն



ժամանակ, երբ քննվելու լինեն անմիջականորեն նրանց վերաբերող հարցեր.

գ) Մյուս գործերը ժամանակ առ ժամանակ վերահանձնվելու են Խորհրդին՝ նրա անդամները հանդիսացող Կառավարությունների համաձայնությամբ։

4. ա) Երբ Խորհուրդը քննելու լինի Խորհրդում չներկայացված պետությանը անմիջականորեն շահագրգռող հարց, այդ պետությունը պետք է հրավիրվի իր ներկայացուցիչներին ուղարկելու այդ հարցի քննարկմանը և ուսումնասիրմանը մասնակցելու համար.

բ) Խորհուրդը կարող է իր աշխատանքի պրոցեդուրան հարմարեցնել իր կողմից քննվող տվյալ պրոբլեմի բնույթին։ Որոշ դեպքերում նա կարող է հարցը նախապես քննարկել իր կազմում, մինչ այլ շահագրգռված պետությունների մասնակցությունը։ Մի այլ դեպքում Խորհուրդը կարող է հրավիրել որևէ տվյալ պրոբլեմի լուծմամբ առավել շահագրգռված պե-

տությունների պաշտոնական կոնֆե-
րանս:

Բ) Համապատասխան Կոնֆերանսի
որոշման, երեք Կառավարություննե-
րից յուրաքանչյուրը նույնօրինակ
հրավերներ է ուղարկել Չինաստանի
և Ֆրանսիայի Կառավարություններին՝
ընդունելու այս տեքստը և միանա-
լու Խորհրդի հիմնմանը:

Գ) Այս տեքստում հիշատակված
հատուկ նպատակների համար Ար-
տաքին Գործերի Մինիստրների Խոր-
հրդի հիմնումը չի հակասելու Ղրի-
մի կոնֆերանսում կայացված հա-
մաձայնության այն մասին, որ պետք
է տեղի ունենան Ամերիկայի Միաց-
յալ Նահանգների, Սովետական Սո-
ցիալիստական Ռեսպուբլիկաների
Միության և Միացյալ Թագավորու-
թյան Արտաքին Գործերի Մինիստրը-
ների պարբերական կոնսուլտացիա-
ներ:

Դ) Կոնֆերանսը քննեց նաև Եվրո-
պական Կոնսուլտատիվ Հանձնաժո-
ղովի դրությունը՝ Արտաքին Գործերի
Մինիստրների Խորհուրդ հիմնելու



համաձայնության լույսի տակ: Գո-
հունակությամբ նշվեց, որ Հանձնա-
ժողովը հաջողությամբ է կատարել
իր հիմնական խնդիրները՝ առաջար-
կություններ ներկայացնելով Գերմա-
նիայի անվերապահ կապիտուլյացիա-
յի, Գերմանիայի ու Ավստրիայի
օկուպացման գոտիների և այդ եր-
կրներում միջդաշնակցային վերա-
հսկիչ մեխանիզմի մասին: Պարզ-
վեց, որ Գերմանիայի նկատմամբ
վերահսկողություն հաստատելու վե-
րաբերյալ և Ավստրիայի հետ վար-
վելիք Դաշնակիցների քաղաքականու-
թյունը կոորդինացնելու դետալ բնույ-
թի հետագա աշխատանքը պետք է
ապագայում գտնվի Բեռլինի Վերա-
հսկիչ Խորհրդի և Վիեննայի Դաշ-
նակցային Հանձնաժողովի իրավասու-
թյան տակ: Դրան համապատասխան
առաջարկվում է ցրել Եվրոպական
Կոնսուլտատիվ Հանձնաժողովը:

## III.
## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Դաշնակից բանակները օկուպաց-
նում են ամբողջ Գերմանիան և գեր-
մանական ժողովուրդը սկսել է քա-

վել այն սարսափելի հանցագործությունները, որոնք կատարվել են այն մարդկանց ղեկավարությամբ, որոնց, նրանց հաջողությունների ժամանակ, նա բաց է ի բաց արտահայտում էր իր հավանությունը և կուրորեն հրնազանդվում։

Կոնֆերանսում համաձայնություն ձեռք բերվեց պարտված Գերմանիայի նկատմամբ դաշնակից վերահըսկողության շրջանում Դաշնակիցների կոորդինացված քաղաքականության քաղաքական և տնտեսական սկըզբունքների մասին։

Այդ Համաձայնության նպատակն է կատարել Գերմանիայի վերաբերյալ Ղրիմի Դեկլարացիան։ Գերմանական միլիտարիզմը և նացիզմը արմատախիլ կարվեն և Դաշնակիցները միմյանց հետ համաձայն, այժմ և ապագայում, ձեռք կառնեն նաև այլ միջոցներ, որոնք անհրաժեշտ են, որպեսզի Գերմանիան այլևս երբեք չսպառնա իր հարևաններին կամ խաղաղության պահպանմանը ամբողջ աշխարհում։



Դաշնակիցները մտադիր չեն ոչընչացնելու կամ ստրկացնելու գերմանական ժողովրդին։ Դաշնակիցները մտադիր են գերմանական ժողովրդին հնարավորություն տալ նախապատրաստվելու այն բանին, որ հետագայում իրագործվի իրենց կյանքի վերակառուցումը դեմոկրատական և խաղաղ հիմունքով։ Եթե գերմանական ժողովրդի սեփական ջանքերը անընդհատ ուղղված լինեն այդ նպատակին հասնելու կողմը, ապա նրա համար հնարավոր կլինի ժամանակի ընթացքում տեղ գրավել աշխարհի ազատ և խաղաղ ժողովուրդների մեջ։

Այդ համաձայնության տեքստում ասված է.

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ, ՈՐՈՆՑՈՎ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ՂԵԿԱՎԱՐՎԵԼ ՎԵՐԱՀՍԿՄԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՀԵՏ ՎԱՐՎԵԼԻՍ

## Ա. Քաղաքական սկզբունքներ

1. Գերմանիայում վերահսկիչ մեխանիզմի վերաբերյալ Համաձայնության համապատասխան Գերմանիա-

յում գերագույն իշխանությունն իրագործելու են Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Միացյալ Թագավորության և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի զինված ուժերի Գլխավոր Հրամանատարները, յուրաքանչյուրը օկուպացման իր գոտում, իրենց համապատասխան Կառավարությունների հրահանգներով, ինչպես նաև Գերմանիային, ամբողջությամբ վերցրած, վերաբերող հարցերում՝ համատեղորեն, գործելով որպես Վերահսկիչ Խորհրդի անդամներ։

2. Որքան որ գործնականորեն իրագործելի է դա, պետք է ամբողջ Գերմանիայում միանման վերաբերմունք լինի գերմանական բնակչության նկատմամբ։

3. Գերմանիայի օկուպացման նպատակները, որոնցով պետք է ղեկավարվի Վերահսկիչ Խորհուրդը, հանդիսանում են.

I) Գերմանիայի լիակատար զինաթափում և ապամիլիտարիզա-



ցիա և գերմանական ամբողջ արդյունաբերության լիկվիդացիա, որը կարող է օգտագործվել ռազմական արտադրության համար, կամ վերահսկողություն նրա նկատմամբ։ Այդ նպատակով.

ա) Գերմանիայի բոլոր ցամաքային, ծովային և օդային զինված ուժերը, ՍՍ, ՍԱ, ՍԴ և Գեստապոն իրենց բոլոր կազմակերպություններով, շտաբներով և հիմնարկություններով, ներառյալ Գլխավոր շտաբը, սպայական կորպուսը, պահեստայինների կորպուսը, ռազմական ուսումնարանները, պատերազմի վետերանների կազմակերպությունը և բոլոր մյուս ռազմական ու կիսառազմական կազմակերպությունները, իրենց ակումբներով ու ասոցիացիաներով, որոնք ծառայում են Գերմանիայում ռազմական տրադիցիաները պահպանելու շահերին, լրիվին և վերջնականապես վերացվելու են, որպեսզի ընդմիշտ կանխվի գերմանական մի-

լիտարիզմի և նացիզմի վերածնումը կամ վերակառուցումը.

բ) ամբողջ սպառազինությունը, հանդերձանքը և պատերազմի գործիքները, դրանց արտադրման բոլոր մասնագիտական միջոցները պետք է գտնվեն Դաշնակիցների տրամադրության տակ կամ պետք է ոչնչացվեն։ Բոլոր ինքնաթիռների և ամեն տեսակ սպառազինության, հանդերձանքի և պատերազմի գործիքների պահպանումն և արտադրությունը պետք է կանխվի։

II) Գերմանական ժողովրդին համոզել, որ նա ռազմական տոտալ պարտություն է կրել և որ նա չի կարող խուսափել այն բանի պատասխանատվությունից, որ նա իր վրա է վերցրել, որքան որ նրա սեփական դաժան ռազմավարությունը և նացիստների մոլի դիմադրությունը քայքայել են գերմանական էկոնոմիկան և քաոսն ու տառապանքները դարձրել անխուսափելի։



III) Ոչնչացնել նացիոնալ-սոցիալիստական պարտիան և նրա բաժանմունքները ու նրան ենթակա կազմակերպությունները, ցրել նացիստական բոլոր հաստատությունները, ապահովել որ դրանք չվերածնվեն ոչ մի ձևով և կանխել ամեն տեսակ նացիստական ու միլիտարիստական գործունեություն կամ պրոպագանդա։

IV) Նախապատրաստվել գերմանական քաղաքական կյանքի վերջնական վերակառուցմանը դեմոկրատական հիմունքով և Գերմանիայի էվենտուալ խաղաղ համագործակցությանը միջազգային կյանքում։

4. Նացիստական բոլոր օրենքները, որոնք հիմք են ստեղծել հիտլերյան ռեժիմի համար կամ որոնք դիսկրիմինացիա են հաստատել ռասայի, կրոնի կամ քաղաքական համոզմունքների հիման վրա, պետք է վերացվեն։ Նման ոչ մի իրավական, վարչական կամ այլ դիսկրիմինացիա չի հանդուրժվի։

5. Պատերազմի հանցագործները և

նրանք, որոնք մասնակցել են նացիստական միջոցառումների պլանավորմանը կամ իրագործմանը, որոնց հետևանքով առաջ են եկել կամ տեղի ունեցել գազանություններ կամ պատերազմական հանցագործություններ, պետք է ձերբակալվեն և դատի հանձնվեն։ Նացիստական լիդերները, նացիստների ազդեցիկ կողմնակիցները և նացիստական հաստատությունների ու կազմակերպությունների ղեկավար կազմը և օկուպացիայի ու նրա նպատակների համար վտանգավոր ամեն տեսակ անձինք պետք է ձերբակալվեն և ներկալվեն։

6. Նացիստական պարտիայի բոլոր անդամները, որոնք ավելի են եղել, քան նրա գործունեության անվանական մասնակիցներ, և դաշնակցային նպատակներին թշնամի բոլոր մյուս անձինք պետք է հեռացվեն հասարակական կամ կիսահասարակական պաշտոններից և մասնավոր կարևոր ձեռնարկությունների պատասխանատու պոստերից։ Այդ-



պիսի անձինք պետք է փոխարինվեն այնպիսիններով, որոնք իրենց քաղաքական և բարոյական հատկություններով ընդունակ են համարվում օգնելու իսկական դեմոկրատական հաստատությունների զարգացմանը Գերմանիայում։

7. Կրթությունը Գերմանիայում պետք է վերահսկողության տակ առնվի, որպեսզի լիովին վերացվեն նացիստական և միլիտարիստական դոկտրինաները և հնարավոր դառնա դեմոկրատական գաղափարների հաջող զարգացումը։

8. Դատական սիստեմը վերակառուցվելու է համապատասխան դեմոկրատիայի, արդարադատության սկզբունքների՝ օրինականության և բոլոր քաղաքացիների իրավահավասարության հիման վրա, առանց ռասայի, ազգության ու կրոնի խտրության։

9. Գերմանիայում կառավարումը պետք է անցկացվի քաղաքական ստրուկտուրան ապակենտրոնացնելու և տեղերում պատասխանատվու-

թյան զգացմունք զարգացնելու ուղղությամբ։ Այդ նպատակով.

I) Տեղական ինքնավարությունը ամբողջ Գերմանիայում վերականգնվելու է դեմոկրատական սկզբունքներով, մասնավորապես ընտրովի խորհուրդների միջոցով, այնքան արագ, որքան դա համատեղելի է ռազմական անվտանգությունը պահպանելու և ռազմական օկուպացիայի նպատակների հետ։

II) Ամբողջ Գերմանիայում պետք է թույլատրվեն և խրախուսվեն բոլոր դեմոկրատական քաղաքական պարտիաները, տրամադրելով նրանց ժողովներ հրավիրելու և հրապարակային քննարկումներ կատարելու իրավունք։

III) Ներկայացուցչության և ընտրականության սկզբունքները պետք է մտցվեն գավառական կառավարման և հողերի կառավարման մեջ այնքան արագ, որքան այդ կարող է արդարացվել տեղական ինքնա-



վարությունում այդ սկզբունքների հաջող կիրառումով։

IV) Առայժմ չի հիմնվելու գերմանական ո՛չ մի կենտրոնական կառավարություն։ Սակայն, չնայած դրան, հիմնվելու են մի քանի էականորեն կարևոր գերմանական կենտրոնական ադմինիստրատիվ դեպարտամենտներ, պետական քարտուղարների գլխավորությամբ, մասնավորապես ֆինանսների, տրանսպորտի, կոմունիկացիաների, արտաքին առևտրի և արդյունաբերության բնագավառներում։ Այդ դեպարտամենտները գործելու են Վերահսկիչ Խորհրդի ղեկավարությամբ։

10. Հաշվի առնելով ռազմական անվտանգություն պահպանելու անհրաժեշտությունը, թույլատրվելու է խոսքի, մամուլի և կրոնի ազատություն և հարգվելու են կրոնական հաստատությունները։ Թույլատրվելու է ազատ պրոֆմիությունների ստեղծում, նույնպես հաշվի առնելով ռազմական անվտանգություն պահպանելու անհրաժեշտությունը։

11. Գերմանական ռազմական պոտենցիալը ոչնչացնելու նպատակով սպառազինության, ռազմական հանդերձանքի ու հրանոթների արտադրությունը, ինչպես նաև ամեն տեսակ ինքնաթիռների ու ծովային նավերի արտադրությունը պետք է արգելվի և կանխվի։ Մետաղների, քիմիական նյութերի, մեքենաշինության արտադրությունը և ռազմական էկոնոմիկայի համար անմիջականորեն անհրաժեշտ այլ առարկաների արտադրությունը պետք է խստորեն վերահսկողության տակ առնվի և սահմանափակվի, համապատասխան Գերմանիայի ետպատերազմյան խաղաղ կարիքների հավանություն գտած մակարդակի, որ բավարար է 15-րդ կետում շարադրված նպատակներն իրագործելու համար։ Թույլատրված արդյունաբերության համար հարկ չեղող արտադրական կարողությունները կամ պետք է գրավվեն համապատասխան Միջ-



դաշնակցային Ռեպարացիոն Հանձնաժողովի առաջարկած և շահագրգռված Կառավարությունների կողմից հաստատված ռեպարացիոն պլանի, կամ թե ոչնչացվեն, եթե չգրավվեն։

12. Գործնականորեն ամենակարճ ժամկետում գերմանական էկոնոմիկան պետք է ապակենտրոնացվի առանձնապես կարտելների, սինդիկատների, տրեստների և այլ մոնոպոլիստական համաձայնությունների ձևով ներկայացված տնտեսական ուժի գոյություն ունեցող ծայրահեղ կենտրոնացումը ոչնչացնելու նպատակով։

13. Գերմանիայի էկոնոմիկան կազմակերպելու ժամանակ գլխավոր ուշադրությունը պետք է դարձվի գյուղատնտեսական և ներքին սպառման համար աշխատող խաղաղ արդյունաբերության զարգացման վրա։

14. Օկուպացիայի ժամանակաշրջանում Գերմանիան պետք է դիտվի որպես տնտեսական միասնական ամբողջություն։ Այդ նպատակով

պետք է ընդհանուր քաղաքականություն հաստատվի հետևյալ հարցերում՝

ա) լեռնային և վերամշակող արդյունաբերության արտադրանքի արտադրության և բաշխման.

բ) գյուղատնտեսության, անտառագործության և ձկնորսության.

գ) աշխատավարձի, գների և ռացիոնացման.

դ) Գերմանիայի, ամբողջությամբ վերցրած, իմպորտի և էքսպորտի ծրագրի.

ե) դրամական և կենտրոնացված հարկերի ու մաքսերի բանկային սիստեմի.

զ) ռեպարացիաների և ռազմաարդյունաբերական պոտենցիալի վերացման.

է) տրանսպորտի և կոմունիկացիաների։

Այս քաղաքականությունը անցկացնելու ժամանակ, հարկ եղած դեպքում պետք է ուշադրության առնվեն տեղական տարբեր պայմանները։



15. Պետք է դաշնակից վերահսկողություն հաստատվի գերմանական էկոնոմիկայի վրա, բայց միայն այն սահմաններում, որոնք անհրաժեշտ են՝

ա) ինդուստրիալ զինաթափման և ապամիլիտարիզացիայի, ռեպարացիաների և թույլատրված էքսպորտի ու իմպորտի ծրագրերը կատարելու համար.

բ) ապրանքների արտադրությունը
և ծառայությունները ապահովելու
համար, որոնք անհրաժեշտ են օկուպացիոն ուժերի և Գերմանիայում
տեղահանված անձանց կարիքները
բավարարելու համար և կարևոր են
Գերմանիայում միջին կենսամա-
կարդակը պահպանելու համար, որը
չգերազանցի եվրոպական երկրների
միջին կենսամակարդակից (եվրոպա-
կան երկրներ ասելով, նշանակում է
եվրոպական բոլոր երկրները, բա-
ցառությամբ Միացյալ Թագավորու-
թյունից և Սովետական Միությունից).

գ) վերահսկիչ Խորհրդի սահմանե-
լիք կարգով ապահովելու համար

հիմնական առարկաների համաչափ բաշխումը տարբեր գոտիների միջև, այնպես, որ ամբողջ Գերմանիայում ստեղծվի հաշվեկշռված տնտեսություն և կրճատվի իմպորտի անհրաժեշտությունը.

դ) գերմանական արդյունաբերության և բոլոր տնտեսական ու ֆինանսական միջազգային գործարքների վրա, ներառյալ էքսպորտն ու իմպորտը, վերահսկելու համար, նպատակ ունենալով կանխել Գերմանիայի ռազմական պոտենցիալի զարգացումը և այստեղ հիշատակված մյուս խնդիրներին հասնելը.

ե) տնտեսական գործունեության հետ կապված գերմանական ամբողջ հասարակական ու մասնավոր գիտական, հետազոտական և էքսպերիմենտալ հաստատությունների, լաբորատորիաների և այլնի վրա վերահսկելու համար։

16. Վերահսկիչ Խորհրդի սահմանած տնտեսական վերահսկողությունը մտցնելու և պահպանելու համար պետք է ստեղծվի գերմանական ադ-



մինիստրատիվ ապարատ և գերմանական իշխանություններին պետք է առաջարկվի լիովին, գործնականորեն հնարավոր ծավալով, հայտարարել և իրենց վրա ընդունել այդ ապարատի կառավարումը։ Այդպիսով գերմանական ժողովրդին պետք է ներշնչվի, որ այդ կառավարման և նրա ամեն մի ձախողման պատասխանատվությունը ընկնելու է նրա վրա։ Գերմանական ամեն մի կառավարչություն, որը հակասի օկուպացիայի նպատակներին, կարգելվի։

17. Պետք է անհապաղ միջոցներ ձեռք առնվեն հետևյալ հարցերում՝

ա) տրանսպորտի անհրաժեշտ նորոգում անցկացնելու.

բ) ածխի հանույթը ավելացնելու.

գ) առավելագույն չափով ավելացնել գյուղատնտեսական արտադրանքը և

դ) շտապ նորոգելու բնակարանները ու հիմնական կոմունալ ձեռնարկությունները։

18. Վերահսկիչ Խորհուրդը պետք է անհրաժեշտ քայլեր կատարի վե-

րահսկելու և տնօրինելու համար գերմանական այն արտասահմանյան ակտիվները, որոնք դեռևս չեն անցել Գերմանիայի դեմ մղված պատերազմին մասնակցած Միավորված Ազգերի վերահսկողության տակ:

19. Ռեպարացիաների վճարումից հետո գերմանական ժողովրդին պետք է բավականաչափ ռեսուրսներ թողնվեն, որպեսզի նա կարողանա գոյություն ունենալ առանց դրսի օգնության: Գերմանիայի տնտեսական պլանը կազմելու ժամանակ պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկվեն Վերահսկիչ խորհրդի կողմից հավանություն գտած իմպորտի համար դեպի Գերմանիա: Ընթացիկ արտադրության արտադրանքների և ապրանքային պաշարների էքսպորտից ստացվող օգուտը առաջին հերթին հատկացվելու է այդպիսի իմպորտը վճարելու համար:

Այստեղ նշված պայմանը չի կիրառվելու սարքավորման և այն արտադրանքների նկատմամբ, որոնք



հիշատակված են գերմանական ռեպարացիաների վերաբերյալ Համաձայնության 4 «ա» և 4 «բ» կետերում:

## IV.
## ՌԵՊԱՐԱՑԻԱՆԵՐ ԳԵՐՄԱՆԻԱՅԻՑ

Համապատասխան Ղրիմի կոնֆերանսի որոշման, որ Գերմանիային պետք է ստիպել հնարավոր մեծ չափով հատուցել այն վնասն ու տառապանքները, որ նա պատճառել է Միավորված Ազգերին, և որի համար գերմանական ժողովուրդը չի կարող խուսափել պատասխանատվությունից, հետևյալ Համաձայնությունը կայացվեց ռեպարացիաների վերաբերյալ.

1. ՍՍՌՄ-ի ռեպարացիոն պահանջները բավարարվելու են ՍՍՌՄ-ի օկուպացրած Գերմանիայի գոտուց և արտասահմանում գերմանական համապատասխան ներդրումներից վերցվելու միջոցով:

2. ՍՍՌՄ-ն Լեհաստանի ռեպարացիոն պահանջները կբավարարի ռեպարացիայի իր բաժնից:

3. Ամերիկայի Միացյալ Նահանգ-

ների, Միացյալ Թագավորության և ռեպարացիայի պահանջ ունեցող մյուս երկրների ռեպարացիոն պահանջները բավարարվելու են արևմտյան գոտիներից և գերմանական համապատասխան արտասահմանյան ներդրումներից։

4. Ի լրացումն այն ռեպարացիաների, որ Սովետական Միությունը ստանալու է օկուպացիայի իր գոտուց, ՍՍՌՄ-ն արևմտյան գոտիներից լրացուցիչ կերպով կստանա՝

ա) 15 տոկոս այնպիսի օգտագործման համար պիտանի կոմպլեկտային արդյունաբերական կապիտալ մանագիտական սարքավորում, առաջին հերթին արդյունաբերության մետալուրգիական, քիմիական ու մեքենաշինական ճյուղերից, որ անհրաժեշտ չէ գերմանական խաղաղ տնտեսության համար և պետք է վերցվի Գերմանիայի արևմտյան գոտիներից, էկվիվալենտային արժեքով փոխանակելով ի դիմաց պարենամթերքի, ածուխի, պոտաշի, ցինկի, անտառանյութի, կավե առարկաների,



նավթամթերքների և այլ տեսակի նյութերի, որոնց մասին պայման կըկապվի համաձայնությամբ.

բ) 10 տոկոս այնպիսի արդյունաբերական կապիտալ սարքավորում, որը անհրաժեշտ չէ գերմանական խաղաղ էկոնոմիկայի համար և որը պետք է վերցվի արևմտյան գոտիներից ի հաշիվ ռեպարացիայի առանց վարձատրության կամ որևէ այլ կերպ փոխհատուցման՝ Սովետական Կառավարությանը հանձնվելու համար։

վերոհիշյալ «ա», «բ» կետերում պայմանավորված սարքավորումը վերցնելը կատարվելու է միաժամանակ։

5. Ռեպարացիայի հաշվին արևմտյան գոտիներից վերցվելու ենթակա սարքավորման քանակը պետք է որոշվի ամենաուշը 6 ամսվա ընթացքում, սկսած ներկա ժամանակից։

6. Արդյունաբերական կապիտալ սարքավորումը վերցնելը կսկսվի այնքան արագ, որքան այդ հնարավոր է

և կավարտվի երկու տարվա ընթացքում, 5-րդ կետում նշված որոշումից հետո: 4 «ա» կետով պայմանավորված մթերքների հանձնումները կըսկըսվեն այնքան արագ, որքան այդ հնարավոր է և կատարվելու են Սովետական Միության կողմից համաձայնությամբ պայմանավորված պարտիաներով, հինգ տարվա ընթացքում, սկսած հիշյալ օրվանից: Գերմանական խաղաղ էկոնոմիկայի համար անհրաժեշտ չհանդիսացող և դրա համար էլ ռեպարացիայի ենթակա արդյունաբերական կապիտալ սարքավորման քանակի և բնույթի վերաբերյալ որոշումները կընդունվեն Վերահսկիչ Խորհրդի կողմից, ռեպարացիաների վերաբերյալ Դաշնակցային Հանձնաժողովի ընդունած քաղաքականության համաձայն, Ֆրանսիայի մասնակցությամբ, ըստ որում վերջնական որոշումները կկայացվեն այն գոտու հրամանատարի կողմից, որտեղից վերցվելու է սարքավորումը:

7. Մինչև վերցվելու ենթակա սարքավորման ընդհանուր քանակի որո-



շումը, կատարվելու են ավանսային հանձնումներ այնպիսի սարքավորման, որը որոշվելու է որպես հանձնման ենթակա, համապատասխան 6-րդ կետի վերջին նախադասության մեջ նշված կարգի:

8. Սովետական Կառավարությունը հրաժարվում է ռեպարացիաների վերաբերյալ բոլոր պահանջներից՝ Գերմանիայի արևմտյան օկուպացված գոտիներում գտնվող գերմանական ձեռնարկությունների ակցիաների նկատմամբ, ինչպես նաև գերմանական արտասահմանյան ակտիվներից այն բոլոր երկրներում, բացառությամբ նրանցից, որոնք նշված են 9-րդ կետում:

9. ԱՄՆ-ի և Միացյալ Թագավորության կառավարությունները հրաժարվում են ռեպարացիայի վերաբերյալ բոլոր պահանջներից՝ Գերմանիայի օկուպացման արևելյան գոտում գտնվող գերմանական ձեռնարկությունների ակցիայի նկատմամբ, ինչպես նաև Բուլղարիայում, Ֆինլանդիայում, Հունգարիայում, Ռումի-

նիայում և արևելյան Ավստրիայում գտնվող գերմանական արտասահմանյան ակտիվների նկատմամբ։

10. Սովետական Կառավարությունը պահանջ չունի դաշնակից զորքերի կողմից Գերմանիայում գրավված ոսկու նկատմամբ։

## V.

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՆԱՎԱՏՈՐՄԸ ԵՎ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՆԱՎԵՐԸ

Կոնֆերանսը սկզբունքորեն համաձայնության եկավ անձնատուր եղած գերմանական նավատորմը և առևտրական նավերը օգտագործելու և տնօրինելու միջոցառումների վերաբերյալ։ Որոշվեց, որ երեք Կառավարությունները մասնագետներ կնշանակեն, որոնք համատեղ կմշակեն համաձայնեցված սկզբունքների իրագործման մանրամասն պլանները։ Հետևյալ համատեղ հայտարարությունը կհրապարակվի միաժամանակ երեք Կառավարությունների կողմից պատշաճ ժամանակ։



## VI.

## ՔՅՈՆԻԳՍԲԵՐԳ ՔԱՂԱՔԸ ԵՎ ՆՐԱ ՀԱՐԱԿԻՑ ՇՐՋԱՆԸ

Կոնֆերանսը քննեց Սովետական Կառավարության առաջարկությունը այն մասին, որ նախքան խաղաղ կարգավորման ժամանակ տերիտորիալ հարցերի վերջնական լուծումը, Բալթիկ ծովին հարող ՍՍՌՄ Արևմտյան սահմանի մասն անցնի Դանցիգի ծովախորշի արևելյան ափի կետից դեպի արևելք— Բրաունսբերգից Հյուսիս—Գոլդապից դեպի Լիտվայի, Լեհական ռեսպուբլիկայի և Արևելյան Պրուսիայի սահմանների հատումը։

Կոնֆերանսը սկզբունքորեն համաձայնվեց Սովետական Կառավարության առաջարկության հետ Քյոնիգսբերգ քաղաքը և նրա հարակից շրջանը, ինչպես նկարագրված է վերևում, Սովետական Միությանը հանձնելու մասին։ Սակայն ճշգրիտ սահմանը ենթակա է էքսպերտների հետազոտմանը։

ԱՄՆ-ի Պրեզիդենտը և Մեծ Բրիտանիայի Պրեմյեր-Մինիստրը հայ-

տարարեցին, որ նրանք Կոնֆերանսի
այդ առաջարկությունը կպաշտպանեն
առաջիկա խաղաղ կարգավորման
ժամանակ։

## VII.
## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՆՑԱԳՈՐԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երեք Կառավարությունները նշե-
ցին այն քննարկումը, որը վերջին շա-
բաթների ընթացքում տեղի է ունեցել
Լոնդոնում բրիտանական, ամերիկ-
յան, սովետական և ֆրանսիական
ներկայացուցիչների միջև պատերազ-
մի այն բոլոր գլխավոր հանցագործ-
ների նկատմամբ դատաստան տես-
նելու մեթոդների մասին համաձայ-
նության գալու նպատակով, որոնց
հանցագործությունները Մոսկվայի
1943 թվի հոկտեմբերի Դեկլարացիա-
յով չեն վերաբերում աշխարհագրա-
կան որոշակի տեղի։ Երեք Կառավա-
րությունները հաստատում են իրենց
մտադրությունը՝ այդ հանցագործնե-
րին արագորեն հանձնել արդար դա-
տաստանի։ Նրանք հույս ունեն, որ
Լոնդոնի բանակցությունների ար-
դյունքը կլինի այդ նպատակով կա-



յացված արագ համաձայնությունը և
նրանք շատ կարևոր գործ են համա-
րում, որպեսզի այդ գլխավոր հան-
ցագործների դատը սկսվի որքան կա-
րելի է ավելի շուտ։ Մեղադրյալների
առաջին ցուցակը կհրապարակվի
մինչև սույն թվի սեպտեմբերի 1-ը։

## VIII.
## ԱՎՍՏՐԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Կոնֆերանսը ուսումնասիրեց Սո-
վետական Կառավարության առաջար-
կությունը Ավստրիայի ժամանակա-
վոր Կառավարության իրավասությու-
նը ամբողջ Ավստրիայի վրա տարա-
ծելու մասին։

Երեք Կառավարությունները հա-
մաձայնվեցին, որ նրանք պատրաստ
են ուսումնասիրելու այդ հարցը բրի-
տանական և ամերիկյան զորքերի
Վիեննա քաղաքը մտնելուց հետո։

## IX.
## ԼԵՀԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

Կոնֆերանսը քննեց Լեհական Ազ
գային Միասնության ժամանակավոր
Կառավարությանը և Լեհաստանի ա-
րևմտյան սահմաններին վերաբերող
հարցերը։

Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարության վերաբերմամբ նրանք իրենց դիրքը որոշեցին հետևյալ հայտարարությամբ.

Ա. Մենք գոհունակության զգացմունքով ընդունեցինք այն համաձայնությունը, որ կայացել է Լեհաստանի և արտասահմանի լեհերի ներկայացուցիչների միջև և որը հնարավոր դարձրեց Ղրիմի Կոնֆերանսում կայացված որոշումների համաձայն Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարության կազմումը, որ ճանաչված է երեք Տերությունների կողմից: Բրիտանական Կառավարության և Միացյալ Նահանգների Կառավարության կողմից դիվանագիտական հարաբերությունների հաստատումը Լեհական Ժամանակավոր Կառավարության հետ հանգեցրեց այն բանին, որ նրանք դադարեցին ճանաչելու Լոնդոնի նախկին Լեհական կառավարությունը, որն այլևս գոյություն չունի:

Միացյալ Նահանգների և Մեծ Բրի-



տանիայի կառավարությունները միջոցներ են ձեռք առել պաշտպանելու համար Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարության, որպես Լեհական Պետության ճանաչված Կառավարության շահերը Լեհական Պետությանը պատկանող սեփականության նկատմամբ, որ գտնվում է նրանց տերիտորիայում և նրանց վերահսկողության տակ անկախ այն բանից, թե ինչպիսի ձև ունի այդ սեփականությունը:

Նրանք այնուհետև միջոցներ են ձեռք առել, որպեսզի կանխվի այդ սեփականության հանձնումը երրորդ կողմերին: Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարության բոլոր հնարավորությունները կտրվեն Լեհական Պետության ամեն մի սեփականության վերականգնման նկատմամբ, որը կարող էր ապօրինի կերպով օտարացվել իրավաբանական սովորական միջոցառումները կիրառելու համար:

Երբ Կառավարությունները մտահոգված են, որպեսզի Լեհական Ազ-

գային Միասնության Ժամանակավոր Կառավարությանը օգնություն ցույց տան այնքան արագ, որքան այդ հնարավոր է գործնականորեն, հեշտացնելու համար բոլոր լեհերի վերադարձը Լեհաստան, որոնք ապրում են արտասահմանում և կցանկանան վերադառնալ Լեհաստան, ներառյալ լեհական զինված ուժերի և առևտրական նավատորմի անդամների։ Նրանք սպասում են, որ հայրենիք վերադարձող լեհերին անձնական գույքային իրավունքներ կվերապահվեն լեհական բոլոր քաղաքացիների հետ հավասար հիմունքներով։

Երեք Տերությունները նկատի են առնում, որ Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարությունը համապատասխան Ղրիմի Կոնֆերանսի որոշումների՝ հայտարարել է, որ համաձայն է ըստ հնարավորին շուտ անցկացնել ազատ և ոչ մի բանով չարգելակված ընտրություններ ընդհանուր ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, որոնց բոլոր դեմո-



կրատական և հականացիստական պարտիաները իրավունք կունենան մասնակցելու և թեկնածուներ առաջադրելու, և դաշնակցային մամուլի ներկայացուցիչներին լիակատար ազատություն տալ աշխարհին հաղորդելու Լեհաստանի իրադարձությունների ընթացքի մասին՝ ընտրություններից առաջ և ընտրությունների ժամանակ։

Բ. Լեհաստանի արևմտյան սահմանի վերաբերյալ կայացվել է հետևյալ Համաձայնությունը.

Համապատասխան Ղրիմի Կոնֆերանսում Լեհաստանի մասին կայացված Համաձայնության, երեք Կառավարությունների ղեկավարները քննեցին Լեհական Ազգային Միասնության Կառավարության կարծիքը հյուսիսի և արևմուտքի տերիտորիայի վերաբերյալ, որ Լեհաստանը պետք է ստանա։ Կրայովա Ռադա Նարոդովայի Նախագահը և Լեհական Ազգային Միասնության Կառավարության անդամները ընդունվեցին Կոնֆերանսում և լիովին շարադրեցին ի-

րենց տեսակետը։ Երեք Կառավարությունների ղեկավարները հաստատեցին իրենց կարծիքը, որ Լեհաստանի արևմտյան սահմանի վերջնական որոշումը պետք է հետաձգվի մինչև խաղաղության կոնֆերանսը։

Երեք Կառավարությունների ղեկավարները համաձայնվեցին, որ նախքան Լեհաստանի արևմտյան սահմանի վերջնական որոշումը Բալթիկ ծովից Սվինեմյունդեից մի փոքր դեպի արևմուտք անցնող և այնտեղից Օդեր գետի վրայով մինչև Արևմտյան Նեյսե գետի միացումը և Արևմտյան Նեյսեյի վրայով մինչև չեխոսլովակյան սահմանը անցնող գծից դեպի արևելք ընկած գերմանական նախկին տերիտորիաները, ներառյալ Արևելյան Պրուսիայի այն մասը, որը Բեռլինի Կոնֆերանսի որոշման համապատասխան չի դրված Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կառավարման ներքո և ներառյալ նախկին ազատ Դանցիգ քաղաքի տերիտորիան պետք է գտնվեն լեհական պետության կառավար-



ման տակ և այդ տեսակետից չպետք է դիտվեն որպես Գերմանիայի օկուպացման սովետական գոտու մի մասը։

X.

## ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԵՐ ԿՆՔԵԼՈՒ ԵՎ ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Կոնֆերանսը որոշեց հետևյալ հայտարարությունն անել Եվրոպայում պատերազմի հաղթական ավարտումից հետո երկարատև խաղաղության պայմանները ըստ հնարավորին շուտ սահմանելու համար ընդհանուր քաղաքականության մասին։

Երեք Կառավարությունները ցանկալի են համարում, որ Իտալիայի, Բուլղարիայի, Ֆինլանդիայի, Հունգարիայի և Ռումինիայի ներկայիս անկանոն դրությունը վերջանա հաշտության պայմանագրերի կնքումով։ Նրանք համոզված են, որ մյուս շահագրգռված դաշնակից Կառավարությունները բաժանում են իրենց տեսակետը։

Իրենց կողմից երեք Կառավարու-

թյունները Իտալիայի համար հաշտության պայմանագրի նախապատրաստումը որպես առաջնակարգ խնդիր մտցրել են շատ և կարևոր խնդիրների թվի մեջ, որոնք պետք է քննվեն Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի կողմից։ Իտալիան առանցքի տերություններից առաջինը խզեց իր կապերը Գերմանիայի հետ, որի պարտության մեջ նա մտցրեց նյութական ավանդ և այժմ դաշնակիցների հետ միացել է Ճապոնիայի դեմ մղվող պատերազմում։ Իտալիան ինքը ազատագրվեց ֆաշիստական ռեժիմից և մեծ առաջադիմություն է կատարել դեմոկրատական կառավարումը և հիմնարկությունները վերականգնելու ուղղությամբ։ Այդպիսի հաշտության պայմանագրի կնքումը իտալական ճանաչված դեմոկրատական Կառավարության հետ երեք Կառավարությունների համար հնարավոր է դարձնում կատարել իրենց ցանկությունը՝ պաշտպանել Իտալիայի խնդիրքը նրան Միավորված Ազգերի,



կազմակերպության անդամ ընդունելու մասին։

Երեք Կառավարությունները Արտաքին Գործերի Մինիստրների Խորհըրդի վրա խնդիր են դնում՝ նախապատրաստել հաշտության պայմանագրեր Բուլղարիայի, Ֆինլանդիայի, Հունգարիայի և Ռումինիայի համար։ Այդ պետությունների ճանաչված դեմոկրատական կառավարությունների հետ հաշտության պայմանագրերի կնքումը երեք Կառավարություններին նույնպես թույլ կտան պաշտպանելու նրանց խնդիրքը՝ Միավորված Ազգերի կազմակերպության անդամ ընդունելու մասին։ Երեք Կառավարությունները, յուրաքանչյուրն առանձին վերցրած համաձայն են մոտիկ ժամանակներս, այն ժամանակ գոյություն ունեցող պայմանների լույսի տակ, ուսումնասիրելու Ֆինլանդիայի, Ռումինիայի, Բուլղարիայի և Հունգարիայի հետ, մինչև այդ երկրների հետ հաշտության պայմանագրերի կնքումը, հնա-

բավոր չափով հաստատել դիվանագիտական հարաբերությունները։

Երեք Կառավարությունները չեն տարակուսում, որ նկատի ունենալով Եվրոպայում պատերազմի ավարտման հետևանքով փոփոխված պայմանները, դաշնակից մամուլի ներկայացուցիչները լիակատար ազատություն կվայելեն աշխարհին հաղորդելու Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի և Ֆինլանդիայի իրադարձությունների մասին։

Ինչ վերաբերում է մյուս պետություններին Միավորված Ազգերի կազմակերպության մեջ ընդունելուն, Միավորված Ազգերի Կանոնադրության չորրորդ հոդվածն ասում է.

«1. Միավորված Ազգերի կազմակերպության անդամության ընդունելությունը բաց է բոլոր մյուս խաղաղասեր պետությունների համար, որոնք կստանձնեն սույն Կանոնադրության մեջ պարունակվող պարտավորությունները և որոնք կազմակերպության կարծիքով կարող են և ցանկանում



են կատարել այդ պարտավորությունները։

2. Այդպիսի ամեն մի պետության Միավորված Ազգերի կազմակերպության անդամ ընդունելը կատարվում է Գլխավոր Ասամբլեայի որոշմամբ՝ Անվտանգության Խորհրդի առաջարկությամբ»։

Երեք Կառավարությունները, որքան որ դա վերաբերում է նրանց, կըպաշտպանեն անդամ ընդունվելու խնդիրքը այն պետությունների, որոնք չեզոք են մնացել պատերազմի ժամանակ և որոնք կատարելու են վերոհիշյալ դրույթները։

Երեք Կառավարությունները իրենց, սակայն, պարտավոր են համարում պարզաբանել, որ նրանք իրենց կողմից չեն պաշտպանի անդամ ընդունվելու խնդիրքը, արված Իսպանիայի ներկայիս կառավարության կողմից, որը ստեղծված լինելով առանցքի տերությունների պաշտպանությամբ, իր ծագման, իր բնույթի, իր գործունեության և ագրեսոր պե-

տությունների հետ իր սերտ կապի պատճառով օժտված չէ այդպիսի անդամության համար անհրաժեշտ հատկություններով։

## XI.

## ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԵՆԹԱԿԱ ՏԵՐԻՏՈՐԻԱՆԵՐԸ

Կոնֆերանսը քննեց Սովետական Կառավարության առաջարկությունը խնամակալության ենթակա տերիտորիաների հարցի վերաբերյալ, ինչպես դրանք որոշված են Ղրիմի Կոնֆերանսի որոշման մեջ և Միավորված Ազգերի կազմակերպության Կանոնադրությունում։

Կարծիքների փոխանակումից հետո որոշվեց, որ իտալական նախկին գաղութային տերիտորիաների հարցը այնպիսի հարց է, որը պետք է լուծվի Իտալիայի համար հաշտության պայմանագիր նախապատրաստելու կապակցությամբ և որ իտալական գաղութային տերիտորիաների հարցը քննվելու է Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի կողմից սեպտեմբերին։



## XII.

## ՌՈՒՄԻՆԻԱՅՈՒՄ, ԲՈՒԼՂԱՐԻԱՅՈՒՄ ԵՎ ՀՈՒՆԳԱՐԻԱՅՈՒՄ ԴԱՇՆԱԿԻՑ ՎԵՐԱՀՍԿԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ՊՐՈՑԵԴՈՒՐԱՅԻ ՎԵՐԱՆԱՅԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երեք Կառավարությունները նշեցին, որ Ռումինիայում, Բուլղարիայում և Հունգարիայում Դաշնակից Վերահսկիչ Հանձնաժողովների սովետական ներկայացուցիչները Միացյալ Թագավորության և Միացյալ Նահանգների իրենց կոլեգաներին հաղորդել են Դաշնակից Հանձնաժողովների աշխատանքը բարելավելու առաջարկությունները այժմ, երբ պատերազմական գործողությունները Եվրոպայում դադարել են։

Երեք Կառավարությունները համաձայնվեցին, որ այժմ ձեռնարկվելու է այդ երկրներում Դաշնակից Վերահսկիչ Հանձնաժողովների պրոցեդուրայի վերանայումը, նկատի ունենալով Երեք Կառավարությունների շահերն ու պատասխանատվությունը, որոնք համապատասխան երկրներին համատեղ են առաջարկել զինադա-

դարի պայմանները, որպես հաշվի ընդունելով համաձայնեցված առաջարկությունները։

## XIII.

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՎԱԾ ՏԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

Կոնֆերանսը հետևյալ համաձայնության եկավ Լեհաստանից, Չեխոսլովակիայից և Հունգարիայից գերմանացիներին արտաքսելու մասին։

Երեք Կառավարությունները հարցը քննելով բոլոր տեսանկյուններով, գտնում են, որ պետք է ձեռնարկվի Լեհաստանում, Չեխոսլովակիայում և Հունգարիայում մնացած գերմանական բնակչության կամ նրա մի մասի տեղափոխումը դեպի Գերմանիա։ Նրանք համաձայն են, որ ամեն մի տեղափոխություն, որ տեղի է ունենալու, պետք է կատարվի կազմակերպված և մարդասիրական եղանակով։ Քանի որ մեծ քանակությամբ գերմանացիների ժամանումը Գերմանիա ավելացնում է օկուպացիոն իշխանությունների վրա արդեն ընկած ծանրությունը, նրանք գտնում



են, որ Գերմանիայում Վերահսկիչ Խորհուրդը պետք է առաջին հերթին ուսումնասիրի այդ պրոբլեմը, առանձնապես ուշադրություն դարձնելով այդ գերմանացիների արդարացի բաշխման հարցին՝ օկուպացման բոլոր գոտիների վրա։ Նրանք Վերահսկիչ Խորհրդում եղած իրենց ներկայացուցիչներին հրահանգ կտան իրենց կառավարություններին այնքան շուտ, որքան այդ հնարավոր է, զեկուցելու, թե հիշյալ բնակչությունը Լեհաստանից, Չեխոսլովակիայից և Հունգարիայից արդեն ինչ քանակությամբ է ժամանել Գերմանիա և առաջարկություններ անել ժամանակի ու արագության մասին, որով բնակչության հետագա տեղափոխությունը հնարավոր է կատարել, նկատի ունենալով Գերմանիայում գոյություն ունեցող իրադրությունը։

Միևնույն ժամանակ չեխոսլովակյան կառավարությունը, լեհական ժամանակավոր Կառավարությունը և Հունգարիայում Դաշնակից Վերահսկիչ Հանձնաժողովը իրազեկ կարվեն վերոհիշյալի մասին և նրանց կառա-

չարկվի ձեռնպահ մնալ գերմանական բնակչության հետագա արտաքսումից, ընդհուպ մինչև համապատասխան կառավարությունների կողմից վերահսկիչ խորհրդում ունեցած իրենց ներկայացուցիչների զեկուցման քննարկումը։

## XIV.
## ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՌԱԶՄԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Կոնֆերանսի ժամանակ տեղի էին ունենում Երեք Կառավարությունների Շտաբների Պետերի հանդիպումներ՝ ընդհանուր շահեր ներկայացնող ռազմական հարցերի շուրջը։

## XV.
### Ա) Սովետական Միության դելեգացիայի ցուցակը

ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ, Գեներալիսիմուս Ի. Վ. Ստալին.

ՍՍՌՄ Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսար Վ. Մ. Մոլոտով.

Նավատորմի Ադմիրալ Ն. Գ. Կուզնեցով.



Կարմիր Բանակի Գլխավոր Շտաբի Պետ Ա. Ա. Անտոնով.

Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարի Տեղակալ Ա. Յա. Վիշինսկի.

Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարի Տեղակալ Ս. Ի. Քավթառաձե.

Արտաքին գործերի Ժողովրդական Կոմիսարի Տեղակալ Ի. Մ. Մայսկի.

Ռազմա-Ծովային Նավատորմի Գըլխավոր Շտաբի Պետ Ադմիրալ Ս. Գ. Կուչերով.

Մեծ Բրիտանիայում Սովետական Միության դեսպան Ֆ. Տ. Գուսեվ.

Ամերիկայի Միացյալ Նահանգներում Սովետական Միության դեսպան Ա. Ա. Գրոմիկո.

Արտգործժողկոմատի Կոլեգիայի անդամ, Եվրոպական 2-րդ Բաժնի Վարիչ Կ. Վ. Նովիկով.

Արտգործժողկոմատի Կոլեգիայի անդամ, ԱՄՆ-ի Բաժնի Վարիչ Ս. Կ. Ցարապկին.

Արտգործժողկոմատի Եվրոպական Առաջին Բաժնի Վարիչ Ս. Պ. Կոզիրև.

Արտգործժողկոմատի Բալկանյան Երկրների Բաժնի Վարիչ Ա. Ա. Լավրիշև.

Գերմանիայում Սովետական Զինվորական Ադմինիստրացիայի Գլխավոր Պետի Օգնական Մ. Զ. Սաբուրով.

Գերմանիայում Սովետական Զինվորական Ադմինիստրացիայի Քաղաքական Բաժնի Պետ Ա. Ա. Սոբոլև.

Արտգործժողկոմատի Էքսպերտ-կոնսուլտանտ Ս. Ա. Գոլունսկի.

Բ) Ամերիկայի Միացյալ Նահանգների դելեգացիայի ցուցակը |

Պրեզիդենտ Հարրի Ս. Տրումեն.

Պետական Քարտուղար Ջեմս Ֆ. Բիրնս.

Նավատորմի Ադմիրալ Վիլյամ Դ. Լեգի. Պրեզիդենտին կից ԱՄՆ-ի Ռազմա-Ծովային Նավատորմի Շտաբի Պետ.

Ջոզեֆ Ե. Դեվիս՝ Հատուկ Դեսպան.

Էդվին Պոուլի՝ Հատուկ Դեսպան.

Վ. Ավերել Հարիման՝ Դեսպան ՍՍՌՄ-ում.



Բանակի գեներալ Ջորջ Ս. Մարշալլ, Միացյալ Նահանգների Բանակի Շտաբի Պետ.

Նավատորմի Ադմիրալ Էռնստ Դ. Կինգ, ԱՄՆ-ի Ռազմա-Ծովային Նավատորմի Օպերատիվ Բաժնի Պետ և ԱՄՆ-ի Նավատորմի Գլխավոր Հրամանատար.

Բանակի գեներալ Գ. Գ. Արնոլդ, ԱՄՆ-ի Օդային ուժեր.

Գեներալ-լեյտենանտ Բրեգոն Բ. Սոմերվելլ, Բանակային Ծառայության Հրամանատար.

Վիցե-Ադմիրալ Էմորի Ս. Լենդ, Ռազմա-Ծովային Տրանսպորտի Պետ.

Վիլյամս Լ. Կլեյտոն, Պետական Քարտուղարի Օգնական.

Ջեմս Ս. Դանն, Պետական Քարտուղարի Օգնական.

Բեն Կոգոն, Պետական Քարտուղարի Հատուկ Օգնական.

Գ. Ֆրիմեն Մեթյուս, Պետական Դեպարտամենտի Եվրոպական Բաժնի Դիրեկտոր.

Ջարլզ Ե. Բոլեն, Քարտուղարի

*Օգնական (քաղաքական, զինվորական և տեխնիկական խորհրդականների հետ միասին).*

Գ) Միացյալ Թագավորության դելեգացիայի ցուցակը

*Պրեմյեր-Մինիստր՝*

*Պ-րն* Ուինստոն Ս. Չերչիլլ.

*Պ-րն* Կ. Ռ. Էտտլի.

*Արտաքին Գործերի Մինիստրներ՝*

*Պ-րն* Անտոնի Իդեն,

*Պ-րն* Էրնստ Բեվին.

*Լորդ* Լեզերս, *Ռազմական Տրանսպորտի Մինիստրություն.*

*Սըր* Ալեքսանդր Կադոգան. *Արտաքին Գործերի Մինիստրի Մշտական Տեղակալ.*

*Սըր* Արչիբալդ Կլարկ Կերր, *Նորին Մեծության Դեսպանը Մոսկվայում.*

*Սըր* Վալտեր Մոնկտոն, *Միացյալ Թագավորության դելեգացիայի ղեկավար Մոսկվայի Ռեպարացիոն Հանձնաժողովում.*

*Սըր* Վիլյամ Ստրենգ, *Գերմանիայի օկուպացման բրիտանական գոտու*



*Գլխավոր Հրամանատարի Քաղաքական խորհրդական.*

*Սըր* Էդվարդ Բրիջես, *Մինիստրների Կաբինետի քարտուղար.*

*Ֆելդմարշալ սըր* Ալլան Բրուկ, *Կայսերական Գլխավոր Շտաբի Պետ.*

*Թագավորական Օդային Ուժերի Մարշալ սըր* Չարլզ Պորտալ, *Ավիացիայի Շտաբի Պետ.*

*Նավատորմի Ադմիրալ սըր* Էնդրյու Կանինհեմ, *Ծովային առաջին լորդ.*

*Գեներալ սըր* Հաստինգս Իսմեյ, *Պաշտպանության Մինիստրի Շտաբի Պետ.*

*Ֆելդմարշալ սըր* Հարոլդ Ալեքսանդեր, *Դաշնակից Գեռագույն Հրամանատար Միջերկրածովյան Թատերաբեմում.*

*Ֆելդմարշալ սըր* Հենրի Մեյտլանդ Վիլսոն, *Բրիտանական Միսիայի ղեկավար Վաշինգտոնի Միացյալ Շտաբում,*

*և ուրիշ խորհրդականներ։*

Ի. ՍՏԱԼԻՆ
[illegible] ՏՐՈՒՄԷՆ
Կ. Ռ. ԷՏՏԼԻ



